Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

№ 1-3

16

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

2000

№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։

---

# ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ, ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1954 թվականի հունվարի 21-ին լրանում է Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր և ղեկավար, ամբողջ աշխարհի աշխատավորների մեծ ուսուցիչ և առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի մահվան 30 տարին։

Վ. Ի. Լենինի մահվան երեսնամյակը սովետական ժողովուրդը նշում է մեր երկրի համար քաղաքական, տնտեսական և կուլտուրական նոր հզոր վերելքի և նրա միջազգային հեղինակության աճման ու ամրապնդման պայմաններում։

Մեծ Լենինի անունը անխզելիորեն կապված է Կոմունիստական պարտիայի ամբողջ պատմության հետ, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման ու զարգացման հետ։ Լենինի ստեղծած Կոմունիստական պարտիան, Լենինի աշակերտ և նրա գործի շարունակող մեծ Ստալինի ու

նրանց զինակիցների ղեկավարությամբ ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում։ Այժմ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ իրականացնում է կոմունիզմի կառուցման մեծագույն խնդիրները։ Լենինի անունը դարձել է ամբողջ աշխարհի աշխատավորների դրոշը խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի գործի համար, ժողովուրդների պայծառ ապագայի համար մղվող պայքարում։

Մեծագույն ռևոլյուցիոներ և մտածող Վ. Ի. Լենինը հանդիսանալով Մարքսի և Էնգելսի ուսմունքի հավատարիմ հետևորդը, պատմական նոր պայմաններում, իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում ստեղծագործաբար զարգացրեց մարքսիզմը, բանվոր դասակարգին և նրա պարտիային զինեց գաղափարական հզոր զենքով ու նրան հաղթական պայքարի տարավ կապիտալիզմը տապալելու ու նոր սոցիալիստական հասարակություն ստեղծելու համար։

Լենինը բազմակողմանիորեն մշակեց մի ամբողջական ուսմունք պարտիայի մասին, որպես պրոլետարիատի ղեկավար կազմա-



կերպություն, առանց որի պրոլետարիատը չի կարող հաղթել իր դասակարգային թշնամիներին, չի կարող կառուցել նոր, կոմունիստական հասարակարգ։

Մեր երկրի բանվոր դասակարգը Լենինի ստեղծած Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ համաշխարհային պատմական հաղթանակ տարավ կապիտալիզմի դեմ 1917 թվականի հոկտեմբերին, ճեղքեց իմպերիալիզմի ճակատը և մարդկության համար ճանապարհ հարթեց դեպի կոմունիստական հասարակարգ։

Կոմունիստական պարտիայի առաջնորդ, Սովետական կառավարության ղեկավար Վ. Ի. Լենինը մշակեց տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առաջավոր հզոր սոցիալիստական տերության վերածելու գիտականորեն հիմնավորված ծրագիրը։

Լենինիզմի թշնամիների՝ տրոցկիստների, բուխարինականների և նրանց գործակալների դեմ մղած անողոք պայքարում Կոմունիստական պարտիան, Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ ջախջախեց դավաճաններին և կապիտուլյանտներին, պաշտպանեց լենինիզմը, ապահովեց սոցիալիստական հասարակարգի կառուցումը մեր երկրում և այժմ սովետական ժողովրդին վստահորեն

առաջնորդում է դեպի կոմունիզմ։ Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում հանդիսանում է լենինիզմի ամենահաղթ գաղափարների կենդանի մարմնավորումը։

Լենինիզմի հաղթանակի վառ արտահայտությունը հանդիսացավ Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած համաշխարհային պատմական հաղթանակը։ Կոմունիստական պարտիան հաղթանակել և հաղթանակում է, հավատարիմ լինելով լենինիզմին։



Սովետական ժողովուրդը իրագործում է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու պատմական մեծագույն խնդիրը։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ կոմունիզմին անցնելու համար պետք է երկրի ամբողջ տնտեսությունը փոխադրել ամենաառաջավոր տեխնիկական բազայի վրա։ «Կոմունիզմը,— նշում էր Լենինը,— դա սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։

Զինված լենինյան մեծ գաղափարներով, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կերտում է կոմունիզմի մեծ շենքը։ Կոմունիզմի կառուցման ներկա էտապում ամբողջ աշխար-



հի առջև սովետական ժողովուրդը կանգնած է որպես համարձակ վերափոխիչ, նոր կյանքի կառուցող, իսկ նրա փորձված մարտական ավանգարդ Կոմունիստական պարտիան՝ որպես Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժ։ Կոմունիստական պարտիայի ուժը ժողովրդի հետ նրա ունեցած անխզելի կապի մեջ է։ Ժողովրդի հետ ունեցած սերտ կապի վառ արտահայտությունը հանդիսացավ ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը, որը նոր ուժով ցուցադրեց մեր պարտիայի, պետության և ժողովրդի անխորտակելի միասնությունը։

Հանրագումարի բերելով սովետական ժողովրդի ձեռք բերած մեծագույն հաջողությունները, պարտիայի 19-րդ համագումարը նշեց ՍՍՌՄ հետագա զարգացման վիթխարի ծրագիրը, որի հաջող կենսագործումը մեծագույն քայլ կհանդիսանա սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին։ Սովետական ժողովուրդը մեծ խանդավառությամբ իրագործում է այդ ծրագիրը։

Հինգերորդ հնգամյակի առաջին երեք տարիների հաջողությունները ցույց են տալիս լենինիզմի գաղափարների մեծ ուժը, սոցիալիզմի մեծագույն առավելությունները կապիտալիզմի նկատմամբ։ Սոցիալիստական

արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ 1953 թվականին ավելացել է 2,5 անգամ։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ ծանր արդյունաբերության տեսակարար կշիռը կազմում է նրա $^2/_3$ մասը։

Պարտիան կենսագործում է լենինյան այն ցուցումները, որ ծանր ինդուստրիան հանդիսանում է սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը, որ առանց նրա զարգացման չի կարելի ապահովել թեթև արդյունաբերության, գյուղատնտեսության հետագա աճը և ամրապնդել մեր երկրի պաշտպանունակությունը։

Ծանր ինդուստրիայի բազայի վրա Սովետական Միությունում ստեղծվել են բոլոր հնարավորությունները թեթև և սննդի արդյունաբերության զարգացման, ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքի համար։

Այժմ մեր ժողովրդի կարևորագույն խնդիրներն են գյուղատնտեսության, թեթև և սննդի արդյունաբերության նոր հզոր վերելքի, ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրության խիստ բարձրացման, սովետական առևտրի ավելի լայն ծավալ-



ման, Սովետական պետության հետագա ամրապնդման ապահովումը։ Այդ հարցերը լուծելիս պարտիան ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմի այն սկզբունքով, որ արտադրությունը սոցիալիզմի ժամանակ պետք է ծառայի ամբողջ հասարակության հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարմանը։ Իսկ ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքի ապահովումը պահանջում է գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա վերելք ու զարգացում, որովհետև գյուղատնտեսությունը բնակչությանը մատակարարում է պարեն, իսկ արդյունաբերությանը՝ հումք։

Չնայած գյուղատնտեսության բնագավառում մեր ունեցած մեծ հաջողություններին, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը, գյուղատնտեսության մի շարք ճյուղեր ետ են մնում։ Գյուղատնտեսության արտադրության այժմյան մակարդակը չի համապատասխանում գյուղատնտեսության աճած տեխնիկական հագեցվածությանը և կոլտնտեսությունների ունեցած հնարավորություններին։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումների իրագործումը 2—3 տարվա ընթացքում պարենային ապրանքների առա-

տություն կստեղծի բնակչության համար և հումքի առատություն լայն սպառման ապրանքների ու սննդի արդյունաբերության համար։

Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի հիման վրա անշեղորեն բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Սովետական ժողովրդի բարօրության նկատմամբ հոգատարությունը Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության գլխավոր խնդիրն է։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավման անհետաձգելի խնդիրը լուծելու համար կարևոր նշանակություն ունի պարտիայի և կառավարության որոշումը սովետական առևտրի հետագա զարգացման և ապրանքաշրջանառության բազմակողմանի ծավալման մասին։ Այդ որոշման համաձայն 1954 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը ավելացվում է 72 տոկոսով, 1955 թվականի համար նախատեսված 70 տոկոսի դիմաց։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման ուղղությամբ պարտիայի և կառավարության որոշումները Սո-



վետական Միության ուժի և հզորության ապացույցն են, մեր արդյունաբերության և գյուղատնտեսության հուժկու վերելքի արդյունքը։

Կոմունիզմի կառուցման գործում Վ. Ի. Լենինը վճռական նշանակություն էր տալիս մասսաների կոմունիստական դաստիարակությանը։ Կոմունիստական պարտիան անխախտ վճռականությամբ կատարում է մեծ Լենինի իմաստուն ցուցումները, նա անդուլ պայքար է մղում մարդկանց գիտակցության միջից կապիտալիզմի մնացուկների լիկվիդացման համար, նացիոնալիզմի, կոսմոպոլիտիզմի ամեն մի արտահայտության դեմ։ Պարտիան զինված մարքսիստական-լենինյան գիտությամբ, մասսաներին դաստիարակում է սովետական ջերմ հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

Հանճարեղ Լենինը և նրա գործի շարունակող մեծ Ստալինը բազմիցս նշել են, որ սովետական կարգի ուժի և ամրության հիմքը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն է։ Կոմունիզմի կառուցման ճանապարհին Կոմունիստական պարտիան հետևողականորեն կատարում է մեծ առաջնորդների

այդ ցուցումը, անընդհատ ուժեղացնում և ամրապնդում է այդ դաշինքը։ Պարտիայի միջոցառումները գյուղատնտեսության և ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ մեծ չափով կնպաստեն բանվոր դասակարգի, գյուղացիության դաշինքի և մեր ամբողջ ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության հետագա ամրապնդմանը։

Կոմունիզմի շինարարության կարևորագույն պայմաններից մեկը, ինչպես սովորեցնում էր Լենինը, Սովետական պետության հետագա ամրապնդումն է։ Կոմունիստական պարտիան կենսագործելով լենինյան այդ պատգամը, մեծագույն հոգատարություն է ցուցաբերում մեր մեծ Հայրենիքի հզորացման, նրա պաշտպանունակության ուժեղացման նկատմամբ։

Կոմունիստական պարտիայի լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության հիման վրա կերտվեց ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը։ Այդ քաղաքականությունը ապահովեց բոլոր ժողովուրդների ոչ միայն քաղաքական իրավահավասարությունը, այլև տնտեսական ու կուլտուրական կյանքի զարգացման բարձր մակարդակը, որով և ՍՍՌՄ դարձավ սոցիալիստական ազգերի միասնական մի ինտերնացիոնալ ընտանիք։



Սովետական Միության ժողովուրդները տոնում են Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը։ Ռուս և ուկրաինական ժողովուրդները մեր երկրի եղբայրական մյուս ժողովուրդների հետ միասին ընթանում են խաղաղության և կոմունիստական շինարարության ուղիով։

Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, մեր երկրում լենինիզմի հաղթանակի հետևանքով ծավալվել են այնպիսի հզոր շարժիչ ուժեր՝ ինչպես սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, սովետական հայրենասիրությունը։

Լենինիզմի դրոշի ներքո սովետական ժողովուրդների հետ միասին ազգային վերածնունդ ապրեց հայ ժողովուրդը։ Հայ ժողովուրդը սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, նրանց հետ սերտ համագործակցած հաջողությամբ իրագործում է մեծ Լենինի պատգամները կոմունիզմի կառուցման մասին։

Լենինիզմի գաղափարների նոր, մեծագույն հաղթանակը փայլուն կերպով դրսևորվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Սովետական Միության կողքին ժողովրդական դեմոկրատիայի եր-

կրների հանդես գալով սկիզբ դրվեց նոր փուլին միջազգային սոցիալիզմի զարգացման մեջ։ Ստեղծվել է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի 800 միլիոնանոց լագերը, որի առաջատար ուժը հզոր Սովետական Միությունն է։

Ժողովրդա-դեմոկրատական կարգի հաղթանակը անսպառ հնարավորություններ է բացել էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման համար, աշխատավոր մասսաների նյութական-կուլտուրական դրության անշեղ բարձրացման համար։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում լենինյան գաղափարների հիման վրա հաջողությամբ իրագործվում է ինդուստրացման քաղաքականությունը։ Բավական է մատնանշել, որ 1952 թվականին ժողովրդական Բուլղարիայի ծանր արդյունաբերությունը 56 օրվա ընթացքում տվեց այնքան արտադրանք, որքան տվել էր ամբողջ 1939 թվականի ընթացքում։ Բուլղարիան, որը անցյալում հանդիսանում էր Եվրոպայի ամենահետամնաց երկրներից մեկը, այժմ ունի արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են մեքենաշինությունը, էլեկտրաարդյունաբերությունը, հանքարդյունաբերությունը, ցելյուլոզի արդյունաբերությունը և այլն։



Հանճարեղ Լենինի կոոպերատիվ պլանի կենսագործման շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի երկրները զգալի հաջողությունների են հասել գյուղատնտեսության բնագավառում։ Դեռևս 1953 թվականի սկզբին Լեհաստանում գոյություն ուներ 7 հազար հողագործական արտադրական կոոպերատիվ, Ռումինիայում՝ 4 հազար կոլեկտիվ տնտեսություն։ Հունգարիայում ժողովրդական ռեսպուբլիկայի մշակելի հողերի 40 տոկոսը պատկանում է արտադրական կոոպերատիվներին և պետական տնտեսություններին։

Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները կոմունիստական և բանվորական պարտիաների գլխավորությամբ հաջողությամբ իրագործում են սոցիալիզմի կառուցումը։

Սոցիալիզմի կառուցման համար հաջողությամբ պայքարում է չին մեծ ժողովուրդը։ Սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում չին ժողովրդի հզոր զենքը մարքսիզմ-լենինիզմն է։ «Մենք երախտապարտ ենք Մարքսին, Էնգելսին, Լենինին և Ստալինին,— ասում է Մաո Ցզե-դունը,— որոնք մեզ զենք տվեցին։ Այդ զենքը գնդացիր չէ, այլ մարքսիզմ-լենինիզմը...»։

Մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո հաջողությամբ իրականացվում է ազգային-ազատագրական շարժումը գաղութային ու կախյալ երկրներում։ Ազգային-ազատագրական հուժկու շարժումը քայքայում է իմպերիալիզմի գաղութային սիստեմը, այն ուղղված է միջազգային իմպերիալիզմի տապալմանը։

Լենինիզմի գաղափարներով զինված աշխատավորների պայքարը հանուն ազատության, ազգային անկախության և խաղաղության լայնորեն ծավալվում է կապիտալի բոլոր երկրներում։ Այդ պայքարը գլխավորում են կոմունիստական և դեմոկրատական պարտիաները, որոնք բարձրացնելով դեմոկրատական ազատությունների, ազգային անկախության և ազգային սուվերենության դրոշը, իրենց շուրջն են համախմբում աշխատավորներին՝ կապիտալիզմի տապալման և սոցիալիզմի հաղթանակի համար։ Կանխատեսելով երկրագնդի միլիոնավոր մարդկանց անխոնջ ձգտումը հանուն սոցիալիզմի, Վ. Ի. Լենինը մարգարեաբար գրել է, որ «...սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովված է միանգամայն և անպայման» (Երկեր, հատ. 33, էջ 597)։

Լենինիզմի ամենահաղթ գաղափարների



հաղթանակի կարևորագույն փաստ է միջազգային կոմունիստական շարժման աճը, որը դարձել է զարգացման ժամանակակից օրենքը։ Ներկայումս կոմունիստների քանակն ամբողջ աշխարհում հաշվվում է ավելի քան 24 միլիոն մարդ, կոմունիստական և բանվորական պարտիաների աճը լենինիզմի կենդանի մարմնացումն է։ Լենինիզմի գաղափարները թափանցում են երկրագնդի ամենահեռավոր անկյունները։ Աշխարհում չկա այնպիսի ուժ, որը կարողանա կանգնեցնել նրա հաղթական երթը։ Լենինիզմը դարձել է խաղաղության համար մղվող պայքարի դրոշը ամբողջ աշխարհում։ Սովետական պետության ստեղծող մեծ Լենինը 1917 թվականին, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո ստորագրեց խաղաղության դեկրետը։ Այդ ժամանակվանից մինչև օրս Սովետական Միության Կոմունիստական պարտիան հետևողականորեն վարում է խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու քաղաքականությունը։

Ղեկավարվելով Լենինի պատգամներով, պարտիան արտաքին քաղաքականության բնագավառում ելնում է երկու սիստեմների՝ սոցիալիստական սիստեմի և կապիտալիս-

տական սիստեմի տևական գոյակցության
և խաղաղ մրցակցության հնարավորությու-
նից։
Հակառակ խաղաղասեր ժողովուրդների
խաղաղասիրական ձգտումների, ամերիկյան
գիշատիչ իմպերիալիզմը ձգտում է սանձա-
զերծել նոր համաշխարհային պատերազմ։
Հայտնի է, որ այժմ ամերիկյան իմպերիա-
լիստները վերածնում են պատերազմի նախ-
կին օջախները, հյուսիս-ատլանտյան ագրե-
սիվ բլոկի մեջ են միավորում նոր պատե-
րազմի ուժերը, ձգտում են ստեղծել «եվրո-
պական բանակ», իրականացնում են «սառը
պատերազմի» քաղաքականություն։ Իմպե-
րիալիստական ուժերը նյութում են ժողո-
վուրդներին ստրկացնելու նենգ պլաններ,
իսկ իրենց ազատությունն ու անկախությու-
նը պաշտպանող ժողովուրդները պայքարում
են այդ նենգ պլանները խափանելու համար։
Վ. Ի. Լենինը իր ժամանակին նշելով ա-
մերիկա-անգլիական իմպերիալիզմի գազա-
նային բնույթը, միաժամանակ կանխատեսել
է նրա անխուսափելի կործանումը։
Իմպերիալիստների ագրեսիվ քաղաքակա-
նության դեմ ամբողջ աշխարհում լայնորեն
ծավալվում է խաղաղության ժամանակակից
հզոր շարժումը։ Այդ շարժումը գլխավորում



է խաղաղության դրոշակակիր Սովետական Միությունը։ Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության մասին մի անգամ ևս մատնանշեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ ընկեր Գ. Մ. Մալենկովը ամերիկյան «Ինտերնեյշնլ նյուզ սերվիս» գործակալության եվրոպական գլխավոր դիրեկտոր պ-ն Կինգսբերի Սմիթի հարցերին տված պատասխանում։ «Ինչ վերաբերում է Սովետական կառավարությանը,— նշել է ընկեր Մալենկովը,— ապա նա արել է, անում է և այսուհետև էլ կանի ամեն բան, որպեսզի ժողովուրդները ապրեն հաշտ ու խաղաղ, որպեսզի թույլատրվի միջազգային լարվածությունը և նորմալ հարաբերություններ հաստատվեն պետությունների միջև»։

Լենինիզմը ամբողջ պրոգրեսիվ մարդկության պայքարի դրոշն է ընդդեմ իմպերիալիզմի, հանուն խաղաղության բոլոր երկրների ժողովուրդների միջև, հանուն նրանց լուսավոր ապագայի։

Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը պայքարելով լենինիզմի դրոշի ներքո, հաստատ համոզված է, որ Լենինի անմահ գործը կհաղթանակի ամբողջ աշխարհում։





# ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ՎԵՐԱՄԻԱՎՈՐՄԱՆ 300-ԱՄՅԱԿԸ ՍՍՌՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԵԾ ՏՈՆՆ Է

Ի. ԿՈՍՏՅՈՒՇԿՈ

Պատմական գիտությունների թեկնածու

*1954 թվականի հունվարին Սովետական Միության բոլոր ժողովուրդները կնշեն Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը, որպես պատմական նշանակալից իրադարձություն, որպես ազգային մեծ տոն։*

*1654 թվականի հունվարի 8-ին (նոր տոմարով՝ 18-ին) հավաքվելով Պերեյասլավ, այժմ Պերեյասլավ-Խմելնիցկի քաղաքում, ուկրաինական ժողովրդի ներկայացուցիչները, Ռուսաստանի պատվիրակների, Մոսկվայից ժամանած իրենց արյունակից եղբայրների ներկայությամբ, Ուկրաինան Ռուսաստանի հետ վերամիավորելու հանդիսավոր որոշում ընդունեցին։ Պերեյասլավյան Ռադայի որոշումը, դա ազատասեր*



*ուկրաինական ժողովրդի կամքի հզոր արտահայտությունն էր, նրա դարավոր ձգտումների, հույսերի արտահայտությունը։*

*Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության որոշման մեջ նշված է, որ այդ նշանակալից իրադարձությամբ ավարտվեց ուկրաինական ժողովրդի բազմադարյան պայքարը օտարերկրյա ստրկացնողների դեմ, Ռուսաստանի միասնական պետության մեջ ռուս ժողովրդի հետ վերամիավորվելու համար։*

*Պերեյասլավյան Ռադան նշանավորվեց որպես շրջադարձային էտապ ուկրաինական ժողովրդի կյանքում և խոշոր պրոգրեսիվ դեր խաղաց Ուկրաինայի և Ռուսաստանի հետագա բախտի համար։ Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորումը ամրապնդեց ռուս և ուկրաինական ժողովուրդների դաշինքը, հեշտացրեց ազատ և երջանիկ կյանքի համար նրանց ընդհանուր պայքարը։*

*Սեփական կենսափորձով ուկրաինական ժողովուրդը հասկացավ ժողովուրդների բարեկամության կենարար ուժը՝ մեր սոցիա-*

լիստական Հայրենիքի աշխատավորների բոլոր հաջողությունների գլխավոր պայմանը, սովետական հասարակության հզոր շարժիչ ուժը։



Եղբայրական երեք ժողովուրդները՝ ռուսները, ուկրաինացիները, բելոռուսները ծագել են նույն արմատից՝ հին ռուսական ժողովրդից։ Կիևյան Ռուսիան՝ երբեմնի ընդարձակ և ուժեղ սլավոնական պետությունը, նրանց օրրանն էր։ Կիևյան Ռուսիայի անկումից հետո Ուկրաինայի տերիտորիան մասնատվեց օտարերկրյա զավթիչների կողմից։ Ուկրաինական հողը քայքայում, ավերում և ամայացնում էին թյուրքական սուլթանները, Ղրիմի խաները, Լիտվայի իշխանները, լեհական շլյախտան։ Գտնվելով բնաջնջման սպառնալիքի տակ, ուկրաինական ժողովուրդը անընդհատ պայքար էր մղում օտարերկրյա ճնշողների դեմ, բայց միայնակ, առանց ռուս մեծ ժողովրդի օգնության, նա ազատագրման հասնել չէր կարող։

Լեհական մագնատները և շլյախտան (մանր ազնվականներ) Ուկրաինայում հիմնում էին իրենց կալվածքները, ավելացնում



էին կոռն ու գյուղացիների պարհակները, նրանց ամենադաժան շահագործման էին ենթարկում, արգելակում էին ուկրաինական ժողովրդի հասարակական-տնտեսական զարգացումը։ Զավթիչները հալածում էին ուկրայներեն լեզուն, կուլտուրան և սովորությունները, կաթոլիկական կրոն էին տարածում, դաժանաբար ճնշում էին գյուղացիների և քաղաքացիների ազատագրական պայքարը։ Թյուրք-թաթարական հորդայի մշտական ավազակային արշավանքները է՛լ ավելի էին վատացնում Ուկրաինայի ժողովրդական մասսաների վիճակը։

Ուկրաինական ժողովուրդը հերոսական պայքարի ելավ իր ստրկացնողների դեմ։ Տասնվեցերորդ դարի վերջին և տասնյոթերորդ դարի առաջին կեսին Ուկրաինայում ծավալվեց հզոր հակաֆեոդալական շարժում, որը 1648—1654 թվականներին վերածվեց ուկրաինական ժողովրդի ազատագրական պատերազմի։ Գլխավոր և վճռական ուժը այդ արդարացի պատերազմում ճորտ գյուղացիությունն էր։ Նա պայքարում էր հանուն օտարերկրյա լծից Ուկրաինայի ազատագրման, ընդդեմ ճորտատեր ֆեոդալների ճնշման։

Ուկրաինական ժողովրդի ականավոր զավակ, պետական տաղանդավոր գործիչ և

ղրավար, հմուտ դիվանագետ Բոգդան Խմելնիցկու ղեկավարությամբ կազմվեց համաժողովրդական պայքարի ճակատ, ընդդեմ լեհական ֆեոդալների, հանուն Ռուսաստանի պետության հետ Ուկրաինայի վերամիավորման: Ճիշտ հասկանալով իր ժողովրդի ազգային շահերը, Բոգդան Խմելնիցկին նրա փրկությունը տեսնում էր ռուս մեծ ժողովրդի հետ միավորվելու մեջ:

1648—1654 թվականների ազատագրական պատերազմում ժողովրդական շարժման լայն թափին, նրա նշանակալից հաջողություններին նպաստում է ռուսական պետության և հատկապես Ռուսաստանի ժողովրդական մասսայի մշտական օգնությունն ու աջակցությունը: Ռուս ժողովուրդը խորապես համակրում է Ուկրաինական ժողովրդի ազատագրական պայքարը: Ռուս գյուղացիները և Դոնի կազակները ապստամբած ուկրաինական գյուղացիության և կազակների հետ ուս-ուսի տված պայքարում էին լեհական շլյախտայի դեմ: Ուկրաինական ժողովրդի պայքարը ընդդեմ լեհական ճորտատերերի լայն արձագանք և համակրանք գտավ լեհ գյուղացիության մեջ, որը տառապում էր լեհական ֆեոդալների ճնշման տակ: Լեհաստանի աշխատավոր



մասսաները Ուկրաինայի աշխատավորների հետ միասին պայքարում էին լեհական մագնատների և շլյախտայի դեմ:

Ուկրաինական ժողովուրդը իր ճակատագիրը հավերժ կապելով արյունակից եղբայրական ռուս ժողովրդի հետ, որում նա միշտ տեսնում էր իր հուսալի պաշտպանին և դաշնակցին, դրանով իսկ փրկեց և պահպանեց իրեն՝ որպես ազգ: Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորումը, չնայած այն բանին, որ այն ժամանակ Ռուսաստանը ղեկավարում էին ցարը և կալվածատերերը, հսկայական նշանակություն ունեցավ ուկրաինական և ռուս ժողովուրդների քաղաքական, տնտեսական և կուլտուրական հետագա զարգացման համար: Սլավոնական երկու մեծ ժողովուրդների միավորումը, չնայած ցարիզմի, ռուսական և ուկրաինական կալվածատերերի և բուրժուազիայի ռեակցիոն քաղաքականությանը, մերձեցրեց Ռուսաստանի և Ուկրաինայի ժողովուրդներին: Ընդդեմ ընդհանուր շահագործողների, ընդդեմ ճորտատիրության, ցարիզմի և կապիտալիստական ստրկացման համատեղ պայքարում եղբայրական երկու ժողովուրդներն էլ ընտրեցին միակ ճիշտ ուղին:

Ռուս լավագույն մարդիկ ճանաչեցին Ուկրաինայի ազգային անկախության իրավունքը և ուկրաինական ժողովրդի առաջադեմ գործիչների հետ միասին պայքարում էին հակաժողովրդական այն խայտառակ քաղաքականության դեմ, որը վարում էին ռուսական և ուկրաինական կալվածատերերն ու բուրժուազիան. գրգռելով եղբայրական ժողովուրդներին միմյանց դեմ։ Ուկրաինական և ռուսական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, ժողովուրդներ, որոնք Վ. Ի. Լենինի բնորոշմամբ այնքան մոտ են «և՛ լեզվով, և՛ բնակավայրով, և՛ բնավորությամբ, և՛ պատմությամբ», կռել և կոփվել է հանուն ազատության և անկախության աշխատավորների մղած երկարատև պայքարում։ Եղբայրական սերտ բարեկամությամբ էին կապված Շևչենկոն և Չերնիշևսկին, Գորկին և Կոցյուբինսկին, Միկոլա Լիսենկոն և Ռիմսկի-Կորսակովը։ Ուկրաինականականավոր գրող և գիտնական Իվան Ֆրանկոն ասել է. «Մենք սիրում ենք վելիկոռուսական ժողովրդին և նրան ցանկանում ենք ամեն տեսակի բարօրություն, սիրում և ուսումնասիրում ենք նրա լեզուն... Մենք մեզ համե-



րաշխ ենք զգում ռուս ժողովրդի լավագույն զավակների հետ»։

Պատմության ասպարեզում բանվոր դասակարգի՝ առաջատար ռեվոլյուցիոն ուժի հանդես գալը է՛լ ավելի ամրապնդեց ուկրաինական և ռուս ժողովուրդների անխախտ եղբայրական բարեկամությունը։ Ռուսաստանի ժողովուրդների ազատագրական շարժման գլուխ անցած ռուսական բանվոր դասակարգի պայքարը անխզելիորեն կապվեց ուկրաինական պրոլետարիատի պայքարի հետ։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Ռուսաստանի բանվոր դասակարգը դաշնակցելով ամենաչքավոր գյուղացիության հետ, 1917 թվականի հոկտեմբերին տապալեց կալվածատերերի ու բուրժուազիայի իշխանությունը և հաստատեց բանվորների և գյուղացիների իշխանություն։ 1917 թվականի դեկտեմբերի 25-ին, Սովետների Համաուկրաինական համագումարը Ուկրաինան հռչակեց սովետական սոցիալիստական ռեսպուբլիկա։ Իրականացավ ուկրաինական ժողովրդի դարավոր ձգտումը՝ ստեղծել իր ազգային պետությունը։ Ուկրաինական ժողովրդի պատմության մեջ նոր, փառավոր դարաշրջան բացվեց։

Ռուս ժողովրդից հետո, նա առաջինը գնաց սոցիալիզմի ուղիով։

Մեր Հայրենիքի ժողովուրդները ներքին կոնտրռևոլյուցիայի և միջազգային իմպերիալիզմի ուժերի դեմ մղած կատաղի պայքարում պաշտպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները։ Կոմունիստական պարտիան, սովետական հասարակության ուղղություն տվող և ղեկավար ուժը, հենվելով Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի մեծ ուսմունքի վրա, մեր երկրի ժողովուրդներին առաջնորդեց սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիով։

Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը դարձավ սովետական հասարակության զարգացման շարժիչ ուժերից մեկը, մեր բազմազգ պետության ամրության և հզորության հիմքը։ Այդ բարեկամության մեծ նվաճումները ակնառու կերպով ցույց են տալիս, թե որքան ապարդյուն են բուրժուական նացիոնալիստների բոլոր փորձերը խարխլելու և քայքայելու ռուս, ուկրաինական և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների անսասան դաշինքը։ Սովետական Միության ժողովուրդների համերաշխ, եղբայրական ընտանիքում աճեց և ամրապնդվեց Ուկրաինական Սովետական Սոցիալիստա-



կան պետությունը։ Ուկրաինական ՍՍՌ-ն դարձավ հզոր ինդուստրիալ կոլտնտեսային ռեսպուբլիկա։

Ուկրաինան իր բնակչությամբ (մոտավորապես 40 միլիոն մարդ) և տնտեսական հզորությամբ միութենական երկրորդ ռեսպուբլիկան է ՌՍՖՍՌ-ից հետո։

Ուկրաինայի սոցիալիստական արդյունաբերությունը 1940 թվականին համարյա երկու անգամ ավելի շատ արտադրանք էր տալիս, քան մինչռևոլյուցիոն ամբողջ Ռուսաստանի արդյունաբերությունը և 11 անգամ շատ, քան Ուկրաինայի արդյունաբերությունը 1913 թվականին։

Կազմելով ՍՍՌՄ տերիտորիայի ընդամենը մեկ քառասուներորդական մասը, Ուկրաինական ՍՍՌ-ն Հայրենական Մեծ պատերազմի սկզբում իր տերիտորիայում ուներ Սովետական Միության բնակչության մեկ հինգերորդական մասը։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեկ հինգերորդական մասը, ցորենի ավելի քան մեկ հինգերորդական մասը, շաքարի արտադրանքի երեք քառորդ մասը արտադրվում էր Ուկրաինայում։

Ուկրաինան դարձել է Սովետական Միության խոշորագույն ածխամետալուր-

գիական և պարենային կարևորագույն բազաներից մեկը: Ուկրաինական ռեսպուբլիկան 1940 թվականին տվել է ՍՍՌՄ ամբողջ ածխի հանույթի կեսից ավելին և չուգունի ձուլման ավելի քան 60 տոկոսը: Ուկրաինայում մեքենաների արտադրությունը նախապատերազմյան հնգամյակում աճեց 50 անգամ: Եղբայրական մյուս ռեսպուբլիկաների օգնությամբ Ուկրաինայում կառուցվեցին սոցիալիստական արդյունաբերության այնպիսի հսկաներ, ինչպիսիք են Դնեպրի Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը, Նովո-Կրամատորսկի Ստալինի անվան մեքենաշինական գործարանը, Խարկովի տրակտորի գործարանը և այլն: Ուկրաինայի էլեկտրակայանները, միմյանց հետ կապված լինելով հաղորդալարերով, հանդիսանում են խոշորագույն էներգետիկ սիստեմ Եվրոպայում:

Ուկրաինական գյուղում հաստատվեց կոլտնտեսային կարգ: Մանր անհատական գյուղացիական տնտեսությունների երկրից Սովետական Ուկրաինան վերածվեց մեքենայացված խոշոր սոցիալիստական գյուղատնտեսություն ունեցող երկրի:

Ռեսպուբլիկայի ձեռք բերած տնտեսական հսկայական նվաճումները ապահովե-



ցին նրա բնակչության նյութական բարեկեցության անշեղ վերելքը: Մեծ հաջողությունների է հասել ուկրաինական ժողովուրդը իր ազգային կուլտուրայի զարգացման ուղղությամբ: Մեր երկրի մյուս ժողովուրդների հետ միասին ուկրաինական ժողովուրդը կառուցեց սոցիալիզմ և վերածվեց հզոր սոցիալիստական ազգի:

Հիտլերյան զավթիչների ավազակային հարձակումը սովետական երկրի վրա լուրջ վտանգ ստեղծեց մեր Հայրենիքի ժողովուրդների ազատության և անկախության համար: Ուկրաինական ժողովուրդը Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին ոտքի կանգնելով Հայրենիքի պաշտպանության համար, հերոսաբար կռվում էր Հայրենական պատերազմի ճակատներում և թշնամու թիկունքում: Սովետական ժողովրդի համար այդ դժվար ժամանակաշրջանում ուկրաինական ժողովուրդը, ինչպես և մեր երկրի բոլոր ժողովուրդները, ցուցադրեց իր բարոյա-քաղաքական միասնությունը, սովետական հայրենասիրությունը, նվիրվածությունը Սովետական պետությանը, հավատարմությունը ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությանը և Կոմունիստական պարտիայի գաղափարներին:

1943 թվականին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը ի պատիվ ուկրաինական ականավոր պետական գործիչ և զորավար Բոգդան Խմելնիցկու՝ հիմնեց նրա անվամբ ռազմական շքանշան, որով պարգևատրվեցին ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում աչքի ընկած հազարավոր ռազմիկներ։

Սովետական Միության ժողովուրդները, ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, ջախջախելով հիտլերյան զավթիչներին, մարդկությանը փրկեցին ֆաշիստական ստրկացման վտանգից, ձեռք բերեցին համաշխարհային պատմական հաղթանակ։

Հայրենական Մեծ պատերազմին նախորդող տարիներին և պատերազմից հետո ապահովվեց ամբողջ ուկրաինական հողերի վերամիավորումը միասնական Ուկրաինական Սովետական Սոցիալիստական պետության մեջ։ 1939 թվականին Սովետական Ուկրաինայի հետ վերամիավորվեց Արևմտյան Ուկրաինան, 1940 թվականին՝ Հյուսիսային Բուկովինան և Իզմայիլի մարզը, իսկ 1945 թվականին՝ Անդրկարպատյան Ուկրաինան։

Այդպիսով իրականացվեց ուկրաինական ժողովրդի իղձը՝ իր բոլոր հողերը վերա-



միավորելու մեկ միասնական ազգային պետության մեջ։

Պատերազմը և ֆաշիստական օկուպացիան հսկայական վնաս հասցրին Ուկրաինական ՍՍՌ ժողովրդական տնտեսությանը։ Շատ քաղաքներ վեր էին ածվել ավերակների կույտի, հազարավոր գյուղեր հրկիզվել էին, արդյունաբերական ձեռնարկությունները ավերվել էին, Դոնբասի հանքերը հեղեղվել էին, պայթեցված էր Դնեպրոգէսը, ուժեղ վնաս էր կրել գյուղատնտեսությունը։ Ռեսպուբլիկայի տնտեսությունը վերականգնելու համար անձնվիրաբար աշխատող ուկրաինական ժողովրդին օգնության եկան Սովետական Միության բոլոր եղբայրական ժողովուրդները՝ ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ։ Այդ օգնության շնորհիվ ուկրաինական ժողովուրդը կարողացավ արագորեն վերականգնել ռեսպուբլիկայի էկոնոմիկան և խոշոր չափով գերազանցել նախապատերազմյան մակարդակը։ Ուկրաինական ժողովուրդը, ինչպես և մեր երկրի բոլոր ժողովուրդները, հաջողությամբ պայքարում է ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանի կատարման համար, մեր երկրում

կոմունիստական հասարակարգի կառուցման համար։

Արդեն 1951 թվականին Ուկրաինական ՍՍՌ-ում արդյունաբերական արտադրանքը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց ավելի քան 35 տոկոսով։ Պատերազմից հետո ռեսպուբլիկայում ստեղծվեցին արդյունաբերության նոր ճյուղեր՝ գնդակավոր առանցքակալների, ավտոմոբիլի, մոտոցիկլետի, գազի արդյունաբերություն և այլն։

Ուկրաինական ՍՍՌ-ն իր բնակչությամբ և տերիտորիայով (ավելի քան 576 հազար քառակուսի կիլոմետր) մոտավորապես հավասար է Ֆրանսիային։ Մինչդեռ չուգունի և պողպատի ձուլմամբ, գլանվածքի արտադրությամբ, ածխի հանույթով, տրակտորների թողարկմամբ և տնտեսական այլ ցուցանիշներով Սովետական Ուկրաինան շատ առաջ է անցել Ֆրանսիայից, Իտալիայից և եվրոպական մյուս խոշոր կապիտալիստական երկրներից։

Ուկրաինայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար Սովետական պետությունը 1953 թվականին երեք անգամ ավելի շատ միջոցներ է ծախսել, քան 1940 թվականին։

Ռեսպուբլիկայում արագ թափով ընդար-



ձակվում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Ուկրաինայում վերջին տարիներին շարք մտան Կիևի և Լվովի բամբակամանվածքային ֆաբրիկաները, Չերնովիցի տեքստիլ կոմբինատը, տրիկոտաժեղենի և այլ ձեռնարկություններ։ Այս տարի ռեսպուբլիկայում պլանից դուրս կթողարկվի մեկ միլիարդ 200 միլիոն ռուբլու մասսայական սպառման ապրանք։ Ուկրաինայում մոտակա տարիներին տեքստիլ կոմբինատներ կկառուցվեն՝ Խերսոնում և Պոլտավայում, բրդյա գործվածքների ֆաբրիկաներ՝ Չերնիգովում և Կրեմենչուգում, մետաքսագործվածքային ֆաբրիկա Կիևում, երեք կոշկեղենի և երեք կաշվի կոմբինատ, 14 խոշոր կարի ֆաբրիկա։ Այժմ Ուկրաինայում կառուցվում են 10 շաքարի, 36 յուղի և պանրի գործարան, պահածոների շատ ձեռնարկություններ։

Ուկրաինայի սոցիալիստական գյուղատնտեսությունը հետպատերազմյան տարիներին մեծ հաջողությունների հասավ։ Ուկրաինան Սովետական Միության հացահատիկային կարևորագույն շրջաններից մեկն է և շաքարի ճակնդեղի արտադրության խոշորագույն շրջան՝ աշխարհում։ Ուկրաինայի մեքենա-տրակտորային կայան-

ները այժմ 68 տոկոսով շատ տրակտորներ և 63 տոկոսով շատ կոմբայններ ունեն, քան պատերազմից առաջ:

Ուկրաինայի կոլտնտեսությունները նախապատերազմյան մակարդակը գերազանցեցին նաև անասունների գլխաքանակով: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտելների մեծամասնությունը ունի 3—4 անասնապահական ֆերմա: Ուկրաինայի գյուղատնտեսության հետագա զարգացման համար անցյալ տարի պետության կողմից առանձնացվեց մեկ ու կես միլիարդ ռուբլի: Կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումները, Ուկրաինայի սոցիալիստական գյուղատնտեսության աշխատավորները անձնվիրաբար աշխատում են Հայրենիքի բարօրության համար:

Ուկրաինական ժողովուրդը իրավամբ հպարտանում է նրանով, որ նրա ծոցից են դուրս եկել սոցիալիստական արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության մեջ ամբողջ երկրին հայտնի այնպիսի նորարարներ, ինչպիսիք են՝ Ա. Ստախանովը, Պ. Կրիվոնոսը, Մ. Դեմչենկոն, Պ. Անգելինան, Մ. Օզյորնին, Մ. Խուտոլեյը և շատ ուրիշներ:



Ռուս և ուկրաինացի բանվորները, կոլտնտեսականները, գիտնականները, գրականության և արվեստի գործիչները եղբայրական ստեղծագործական սերտ բարեկամությամբ զոդված շարունակաբար փոխանակում են իրենց փորձը, իրենց ձեռք բերած նվաճումները:

Ամուր տրադիցիա է դարձել սոցիալիստական մրցությունը Ուկրաինայի և Ռուսաստանյան Ֆեդերացիայի արդյունաբերական ձեռնարկությունների և կոլտնտեսությունների միջև: Մրցում են Դոնբասի, Կուզբասի և Մոսբասի ածխահանները, Լվովի և Մոսկվայի կոշկագործները, Չերնովիցի և Տրյոխգորնայա Ձերժինսկու անվան մանուֆակտուրայի ջուլհակները: Անցյալ տարվա նոյեմբեր ամսին Մոսկվայի մարզի Մոժայսկի շրջանի գյուղատնտեսության առաջավորների դելեգացիան մեկնեց Ուկրաինայի Պերեյասլավ-Խմելնիցկիի շրջանը սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելու և 1954 թվականի պայմանագիր կնքելու համար: Մերձմոսկովյան բարձր բերքի վարպետներ ընկերներ Երմակովան և Ավսիևիչը իրենց աշխատանքի փորձը պատմեցին Ուկրաինայի կոլտնտեսականներին: «Մայսկայա ուտրո» կոլտնտեսության օղակավարու-

հի ընկ. Ավսիևիչը ընդունեց Շևչենկոյի անվան կոլտնտեսության օղակավարուհի ընկ. Խոտայի մրցահրավերը և պարտավորվեց 1954 թվականին հեկտարից ստանալ 600 ցենտներ կարտոֆիլ։

Բրոննիցի շրջանի «Բորեց» գյուղատնտեսական արտելի կոլտնտեսականները վերջերս սրտաբաց ընդունեցին Վոլինի մարզի կոլտնտեսականների դելեգացիային։ Մոսկվայի մարզի Ռամենսկի շրջանի կոլտնտեսությունները մրցում են Ուկրաինայի Կիևո-Սվյատոշինսկի շրջանի կոլտնտեսությունների հետ, Լենինյան շրջանի կոլտնտեսությունները՝ Օդեսայի և Չերնովիցի մարզի կոլտնտեսականների հետ։

Ուկրաինական ճարտարապետներն ու նկարիչները մասնակցում են Մոսկվայի մետրոպոլիտենի կայարանների ձևավորմանը։ Նրանց նախագծով է կառուցվում մետրոյի Մեծ օղակի «Կիևսկայա» կայարանը։ Նրա ճարտարապետությունը նվիրված է ռուս և ուկրաինական ժողովուրդների անխախտ բարեկամությանը։ Այդ կայարանում դրված մոզայիկ նկարները պատմում են Պերեյասլավյան Ռադայի, Պոլտավյան ճակատամարտի, Պուշկինի Ուկրաինա ժամանման և Տարաս Շևչենկոյի Պետերբուրգում



Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի և Նեկրասովի մոտ լինելու մասին, Ուկրաինայում 1917 թվականին սովետական իշխանություն հաստատելու համար մղված պայքարի մասին, Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Կիևի ազատագրման մասին, ուկրաինական բոլոր հողերը Ուկրաինական Սովետական Սոցիալիստական միասնական պետության մեջ վերամիավորելու մասին և ռուս ու ուկրաինական ժողովուրդների համատեղ պատմության այլ կարևոր էտապների մասին։

Ավելի լավ, ավելի հարուստ, ավելի կուլտուրական է ապրում ուկրաինական ժողովուրդը։ Նրա բարեկեցությունը աճում է ռեսպուբլիկայի արագ զարգացող արդյունաբերության և գյուղատնտեսության հետ միասին։ Վերականգնվել և ավելի գեղեցիկ է դարձել Ուկրաինայի մայրաքաղաք Կիևը։ Կիևի կենտրոնական մագիստրալը՝ Կրեշչատիկը այժմ բոլորովին նոր հիանալի ճարտարապետական անսամբլեա ունեցող փողոց է։ Խնամքով պահպանվում են Ուկրաինայի մայրաքաղաքի պատմական շենքերը։ Կիևո-Պեչերյան մենաստանում Մոսկվայի հիմնադիր Յուրի Դոլգորուկի աճյունի վրա դրված է գրանիտե սարկոֆագ։

Բնակարանային և կուլտուր-կենցաղային

մեծ շինարարություն է գնում Խարկովում, Օդեսայում, Լվովում, Դնեպրոպետրովսկում, Զապորոժեյում և Ուկրաինայի այլ քաղաքներում։

Սովետական Ուկրաինայի աշխատավորների տրամադրության տակ կան հարյուրավոր սանատորիաներ և հանգստյան տներ, հազարավոր մանկապարտեզներ և պիոներական ճամբարներ, բուժիչ և պրոֆիլակտիկ հիմնարկներ։

Ուկրաինական ՍՍՌ դպրոցներում սովորում են մոտավորապես յոթ միլիոն երեխա, աշխատում են երեք հարյուր հազար ուսուցիչ։ Ամեն տարի Սովետական Ուկրաինայի բարձրագույն ուսումնական հաստատությունները տալիս են 40 հազար մասնագետ, որը շատ ավելի է, քան տալիս էին նախառևոլյուցիոն Ռուսաստանի բոլոր բարձրագույն դպրոցները։

Սոցիալիստական կարգի պայմաններում ծավալվեցին տաղանդավոր, եռանդուն և կենսախինդ ուկրաինական ժողովրդի ստեղծագործական ուժերը, ծաղկեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, զարգացան և հարստացան գիտությունը, գրականությունը և արվեստը։ Գիտական խոշորագույն կենտրոն է հանդի-



սանում Ուկրաինական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան։ Ակադեմիան տանում է խոշոր գիտա-հետազոտական աշխատանք։ Գիտական աշխատողների բազմաթիվ կադրեր իրենց բոլոր ուժերը նվիրում են կոմունիզմի կառուցման գործին։

Սովետական ողջ ժողովուրդը գիտե ուկրաինական հիանալի գրողներին՝ Պ. Տիչինային, Ա. Կորնեյչուկին, Մ. Բաժանին, բեմի ականավոր վարպետներ Ի. Պատորժինսկուն, Մ. Լիտվինենկո-Վոլգեմուտին, Բ. Գմիրիային և ուկրաինական մյուս տաղանդավոր արտիստներին, նկարիչներին, որոնցով և հպարտանում է։ Սովետական Ուկրաինայում կան 74 թատրոն, մեծ քանակությամբ կուլտուրայի տներ և ակումբներ, այդ թվում մոտ 24 հազար գյուղական և կոլտնտեսային, տասնյակ հազարավոր գրադարան։ 1952 թվականին Ուկրաինական ՍՍՌ գրքի հրատարակության տիրաժը կազմում էր 68 միլիոն օրինակ։ Ուկրաինական ժողովրդի սոցիալիստական կուլտուրան, ինչպես և մեր երկրի բոլոր ժողովուրդների կուլտուրան, տոգորված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սովետական հայրենասիրության վեհ գաղափարներով, կոմունիզմի կառուցման համար ժողովրդին ծա-

ռայնելու գաղափարով։ Նա զարգանում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի հետ ունեցած մշտական ստեղծագործական կուլտուրական համագործակցության պրոցեսում։

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ուկրաինական ժողովուրդը հասավ խոշորագույն հաջողությունների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Ռուս ժողովրդի և սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ ուկրաինական ժողովրդի անխախտ բարեկամությունը հանդիսանում է Սովետական Ուկրաինայի և բոլոր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների հետագա ծաղկման գրավականը։

Ուկրաինական ժողովուրդը Սովետական Միության մյուս բոլոր ժողովուրդների հետ միասին ջանասիրությամբ պայքարում է հանուն ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման, ընդդեմ միջազգային ռեակցիայի մեքենայությունների, հանուն ՍՍՌՄ պաշտպանության ամրապնդման։

Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը ուկրաինական ժողո-



վուրդը և մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդները հանդիսավոր կերպով տոնում են բազմազգ Սովետական պետության չտեսնված ծաղկման, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ամբողջ լագերի մեծ հաջողությունների իրադրության մեջ։ Դեռ երբեք սովետական հասարակության միաձնությունը այնքան մոնոլիտ չի եղել, դեռ երբեք սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը այնպես ամուր և անխախտ չի եղել, ինչպես այժմ։ Կենսագործելով պարտիայի 19-րդ համագումարի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայի և ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումները, մեր երկրի ժողովուրդները սերտորեն համախմբված եղբայրական ընտանիքում, Կոմունիստական պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ վստահորեն առաջ են ընթանում կոմունիզմի ուղիով։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 30-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

*1. Մեծ Լենինը Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ստեղծող և ղեկավար։*

*2. Առանց Լենինի, Կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ, լենինյան ուղիով։*

*3. Լենինիզմը ամբողջ աշխարհի աշխատավորների պայքարի դրոշն է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար։*

*4. Ապրում և հաղթանակում են լենինիզմի գաղափարները։*

*5. ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը լենինիզմի գաղափարների հաղթանակն է։*

*6. Սրբությամբ կենսագործելով Մեծ Լենինի պատգամները, սովետական ժողովուրդը ձեռք է բերել համաշխարհային պատմական հաղթանակներ։*

*7. Վ. Ի. Լենինը երիտասարդության մասին։*

*8. Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը հերոսական օրինակ է պայքարելու Հայրենիքի բարօրության և ժողովրդին անձնվեր ծառայելու համար։*



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*1-ին, 2-րդ, 3-րդ և 4-րդ թեմաների վերաբերյալ.*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինի մասին, *հրատարակված առանձին գրքով, Հայպետհրատ, 1952 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինը որպես ՌԿԿ կազմակերպիչ և առաջնորդ, *Երկեր, հատոր 4-րդ, էջ 341—352։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինի մահվան առթիվ, ճառ Սովետների Համամիութենական 2-րդ համագումարում, *26 հունվարի 1924 թ., Երկեր, հատոր 6, էջ 55—62։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինի մասին, ճառ Կրեմլյան կուրսանտների երեկույթում, *28 հունվարի 1924 թ., Երկեր, հատոր 6, էջ 63—76։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Բանվորուհիներ և գյուղացուհիներ, հիշեցեք և կատարեցեք Իլյիչի պատգամները, «Ռաբոչայա գազետա»-*ին, Երկեր, հատոր 7, էջ 3—4, էջ 18։* Ամերիկյան Առաջին բանվորական դելեգացիայի հետ ունեցած զրույցից, *9 սեպտեմբերի 1927 թ., Երկեր, հատոր 10, էջ 105—114։* Գերմանական գրող Էմիլ Լյուդվիգի հետ ունեցած զրույցից, *13 դեկտեմբերի 1931 թ., Երկեր հատոր 13, էջ 115—118։* Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, *1937 թ. դեկտեմբերի 11-ին Մեծ թատրոնում, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1937 թ.։* Ճառ Բարձրագույն դպրոցի աշխատողների՝ Կրեմլում տեղի ունեցած ընդունելությանը, *1938 թվականի մայիսի 17-ին, առանձին*

*բրոշյուր, Հայպետհրատ, 1938 թ.։* Ճառ Մոսկվա Փաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, *9 փետրվարի 1946 թ., առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1950 թ.։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.։*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը, առանձին բրոշյուր, *Հայպետհրատ, 1953 թ.։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## 5-ՐԴ ԵՎ 6-ՐԴ ԹԵՄԱՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Նամակ Ուկրաինայի բանվորներին և գյուղացիներին, Դենիկինի դեմ հաղթանակների առթիվ, *Երկեր, հատոր 30, 4-րդ հրատարակություն, էջ 365—374։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Ազգային մոմենտները պարտիական ու պետական շինարարության մեջ, *Երկեր, հատոր 5, էջ 201—216։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.։*

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1952 թ.։*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ— Հոկտեմբերյան Սոցիալիստա-



կան Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.։*

Ա. Մ. ՊԱՆԿՐԱՏՈՎԱ— ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը մեծ շարժիչ ուժ է կոմունիզմի համար մղվող պայքարում, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ 1953 թ.։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## 7-ՐԴ և 8-ՐԴ ԹԵՄԱՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդական միությունների խնդիրները, *(ճառ Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդության Միության Համառուսաստանյան 3-րդ համագումարում) 2 դեկտեմբերի 1920 թ., Երկեր, հատոր 31, 4-րդ հրատարակություն, էջ 343—366։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Ճառ ՀամԼԿԵՄ 8-րդ Համագումարում, *16 մայիսի 1928 թ.։ Երկեր, հատոր 11, էջ 77—84։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինյան կոմերիտմիությանը։ Ողջույն ՀամԼԿԵՄ-ի 10-ամյա հոբելյանի օրը, *Երկեր, հատոր 11, էջ 277—278։*

*Մ. Ի.* ԿԱԼԻՆԻՆ— Կոմունիստական դաստիարակության մասին, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1947 թ.։*

## ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ՎԵՐԱՄԻԱՎՈՐՈՒՄԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ

1. *Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը ՍՍՌՄ ժողովուրդների հավիտենական անխախտ բարեկամության հաղթական տոնն է։*
2. *Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամությունը լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության արդյունքն է։*
3. *Սովետական Միության ժողովուրդները Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը նշում են որպես ազգային փառապանծ մեծ տոն։*
4. *Ուկրաինան սովետական իշխանության տարիներին դարձավ բարձր զարգացման հասած սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի երկիր։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի ԼԵՆԻՆ— Նամակ Ուկրաինայի բանվորներին և գյուղացիներին, Դենիկինի դեմ հաղթանակների առթիվ, *Երկեր, հատոր 30, 4-րդ հրատարակություն, էջ 365—374։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա *(Հիմնական օրենք)։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953)։*

Կ. Ե ՎՈՐՈՇԻԼՈՎ— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի 36-րդ տարեդարձը, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953 թ.։*



*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեում, ՍՍՌՄ Մինիստրների Սովետում, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունում,* Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թվականի դեկտեմբերի 9-ի համարում։*

Թեզիսներ Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակի մասին (1654—1954)։

Մ. ԳՐԵՉՈՒԽԱ— Ուկրաինական ժողովրդի երջանիկ ճակատագիրը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թվականի դեկտեմբերի 13-ի համարում։*

Ի. ԿՈՍՏՅՈՒՇԿՈ— Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը ՍՍՌՄ ժողովուրդների մեծ տոնն է։ *«Ագիտատորի բլոկնոտ» № 1, 1954 թ.։*

Պ. ԵՊԻՖԱՆՈՎ, Ի. ՖԵԴՈՍՈՎ— Ժողովուրդների բարեկամության դրոշով, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունվարի 8-ի համարում։*

Վ. ՔԱԼԱՇՅԱՆ— Փառավոր պայքարի էջերից, *տպագրված «Գրական թերթ»-ի 1953 թվականի դեկտեմբերի 23-ի համարում։*

---

### ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

Վերմախտ— *գերմաներեն բառ է, որ նշանակում է զինված ուժեր։ Այդպես էին կոչվում իմպերիալիստական Գերմանիայի զինված ուժերը համաշխարհային պատերազմից առաջ, որոնք աշխարհի ժողովուրդ-*

ներին մեծ չարիք բերեցին։ Ագրեսիվ վերմախտի օգնությամբ գերմանական միլիտարիստները միշտ էլ ուրիշ երկրների նկատմամբ զավթողական պատերազմ են մղել։ 1870—1871 թվականներին Գերմանիան պատերազմ սկսեց Ֆրանսիայի դեմ, 80-ական թվականներին նա զավթեց մի շարք տերիտորիաներ Աֆրիկայում, Ասիայում և Խաղաղ օվկիանոսի շրջանում։ Գերմանական վերմախտի ագրեսիվ բնույթը արտահայտվեց հատկապես առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների ժամանակ։

Համաշխարհային առաջին պատերազմում պարտություն կրելուց հետո, գերմանական միլիտարիստները ԱՄՆ-ի և Անգլիայի մոնոպոլիստների օգնությամբ արագ կերպով վերականգնեցին ռազմական արդյունաբերությունը և վերմախտը։ Ֆաշիստական մարդասպանների բանդան Հիտլերի գլխավորությամբ իշխանության գլուխ անցնելուց հետո (1933 թ.) վերմախտը վերածվեց ավելի արագ թափով։ Արդեն 1939 թվականին հիտլերյան կլիկը իր վերմախտի օգնությամբ պատերազմ սկսեց Եվրոպայում, իսկ 1941 թվականի հունիսին ուխտադրժորեն հարձակվեց Սովետական Միության վրա։ 1945 թվականին Սովետական Բանակը ջախջախեց հիտլերյան վերմախտը և փրկեց աշխարհի ժողովուրդներին ֆաշիստական ստրկացումից։

Պոտսդամի կոնֆերենցիայում (1945 թ. հուլիսի 17-ից մինչև օգոստոսի 2-ը) երեք խոշոր տերություն-



ների՝ ՍՍՌՄ-ի, Անգլիայի և ԱՄՆ-ի ներկայացուցիչները գերմանական հարցում համաձայնության հասան, որտեղ գլխավորապես խոսվում էր Գերմանիայի ապառազմականացման և դեմոկրատացման մասին, ինչպես նաև գերմանական ռազմական արդյունաբերության պոտենցիալ ուժի լիկվիդացման մասին։

Պոտսդամի համաձայնագիրը ուղղված էր մի նպատակի՝ վերականգնել Գերմանիան, որպես միասնական, խաղաղասեր, դեմոկրատական պետություն, որն այլևս սպառնալիք չդառնար ոչ իր հարևան պետություններին և ոչ էլ աշխարհում խաղաղությունը պահպանելու գործին։

Սակայն Պոտսդամի կոնֆերենցիայի որոշումները իրականացվեցին միայն սովետական օկուպացիոն գոտում։ ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան բռնեցին Պոտսդամի որոշումների խախտման ուղին։ Նրանք Արևմտյան Գերմանիայում ստեղծեցին այսպես կոչված Բոնի խրտվիլակային կառավարությունը Ադենաուերի գլխավորությամբ, որը սերտորեն կապված է գերմանական և ամերիկյան մոնոպոլիստների հետ։ Այժմ Բոնի կառավարությունը իր ամերիկյան տերերի օգնությամբ վերածնել է ագրեսիվ վերմախտը։ Այդ նպատակով Արևմտյան Գերմանիայում մշակվում է ռազմական արդյունաբերության վերականգնման լայն ծրագիր, պրոպագանդվում է ռևանշիզմը և զավթողական պատերազմը։ Արդեն այժմ վերմախտի համար ամերիկացիները իրենց զորանոցնե-

րի մի մասը ուղարկում են Բոննի կառավարությանը։ Ռազմական պահեստներում կուտակվում է Ամերիկայից բերված զենքը, ռազմամթերքը և ռազմական հանդերձանքը։

Նոր, ագրեսիվ վերմախտի դեմ օրեցօր ընդարձակվում է բողոքի ալիքը, ինչպես բուն Գերմանիայում, այնպես էլ նրան հարևան երկրներում։ Եվրոպայի ժողովուրդները չեն ցանկանում գերմանական միլիտարիզմի զարհուրանքների կրկնում և օրեցօր ուժեղացնում են պայքարը հանուն խաղաղասեր, դեմոկրատական և միասնական Գերմանիայի։

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП
Армении
№ 1 1954 г.
БЛОКНОТ АГИТАТОРА

ՎՖ 08214 Պատվեր 44 Տիրաժ 8100

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան,
Կնունյանցի № 8, 1953 թ., գինը 50 կոպ.։